Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 16 ՕԳՈՍՏՈՍ 1950

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։

# ՆՈՐ ԷՏԱՊ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԵՋ

Մեր երկրում տեղի ունեցող ամեն մի նոր երևույթ կրկին ու կրկին ցույց է տալիս սոցիալիստական սիստեմի առավելությունները կապիտալիստական սիստեմի նկատմամբ։

Մինչդեռ կապիտալիստական երկրներում գյուղատնտեսությունը դեգրեդացիայի է ենթարկվում՝ հողի գիշատիչ շահագործման, հարկային բեռի ավելացման, մանր գյուղացիական տնտեսությունների և ֆերմերների քայքայման հետևանքով, Սովետական երկրում սոցիալիստական գյուղատնտեսությունն աճում և ամրապնդվում է։

Սոցիալիստական գյուղատնտեսության աճման նոր ցուցանիշ է մեր երկրում լայնորեն ծավալված շարժումը՝ կոլտնտեսությունների խոշորացման, գիգանտ-կոլտնտեսությունների, մեքենայացման ենթարկված խոշոր գյուղական տնտեսությունների ստեղծման համար, տնտեսություններ, որոնք բա-

վարարեն մեր երկրի աճող արդյունաբերության պահանջները, ապահովեն մթերքների առատության ստեղծումը սովետական ժողովրդի համար։ Այդ պրոբլեմների լուծման ուղին գտնված է։ Փորձը ցույց է տվել, որ կոլտնտեսություններում կատարվող կոլեկտիվ աշխատանքը՝ ժամանակակից մեքենաների կիրառմամբ, այն աշխատանքը, որին ուղղություն է տալիս սովետական առաջավոր գիտությունը, հրաշքներ է գործում։

Բավական է ասել, որ Հայրենական պատերազմից հետո, 3—4 տարում մեր երկրի գյուղատնտեսությունը ոչ միայն վերականգնըվեց, այլև ներկայումս այն տալիս է ավելի շատ արտադրանք ու հումք, քան տալիս էր պատերազմից առաջ։ Արդեն 1949 թվականին մեր երկիրը լիովին լուծեց հացահատիկային պրոբլեմը։ Անցյալ տարի ստացվեց համարյա այնքան բերք, որ նախատեսված է հետպատերազմյան հնգամյակի վերջին տարվա համար։

Սակայն սովետական մարդիկ չեն հանգըստանում ձեռք բերածով։

Սովետական իշխանության օգնությամբ կոլտնտեսային գյուղացիությունը ստեղծել է ապահովված, կուլտուրական կյանք։ Բայց նա տեսնում է, որ կոլտնտեսային արտա-



դրության դեռ ոչ բոլոր հնարավորություններն ու առավելություններն են օգտագործված։ Կոլտնտեսականներին ինքը կյանքը թելադրում է, որ կարելի է ավելի մեծ հաջողությունների հասնել, եթե ստեղծվեն խոշոր կոլեկտիվ տնտեսություններ։

Խոշոր տնտեսության ուժը,— ինչպես սովորեցնում է ընկեր Ստալինը,—այն է, որ կոլեկտիվ տնտեսությունը հնարավորություն ունի ավելի լավ կիրառելու մեքենաները, օգտագործելու գիտության տվյալները, օգտագործելու պարարտանյութեր, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը ու տալու ավելի շատ գյուղատնտեսական արտադրանք և հումք։ Պրակտիկայում համոզվելով խոշոր տնտեսություններ ստեղծելու նպատակահարմարության մեջ, իրենք կոլտնտեսականներն առաջարկեցին միավորվել, խոշոր կոլտնտեսություններ կազմել։

Վերջին տարիներին սկսվեց սովետական գյուղացիների՝ խոշոր կոլեկտիվ տնտեսություններ ստեղծելու մասսայական շարժումը, որն առաջ բերեց գյուղատնտեսության նոր վերելք մեր երկրում։ Մանր կոլտնտեսությունների միավորման բազայի վրա ստեղծված նոր խոշոր կոլտնտեսությունները

արդեն ցույց են տալիս իրենց անվիճելի առավելությունները։

Կանգ առնենք այդ առավելություններից մի քանիսի վրա։

Սովետական պետությունը տարեց-տարի ավելի շատ մեքենաներ է մատակարարում գյուղատնտեսությանը։ Փոքր տնտեսության մեջ անհնարին է լիակատար արդյունավետությամբ օգտագործել հզոր տրակտորները, կոմբայնային կալսիչները և մյուս մեքենաները։

Տվյալները ցույց են տալիս, որ, օրինակ, կոմբայնները մեկ և կեսից-երկու անգամ ավելի արտադրողականությամբ են աշխատել 350 և ավելի հեկտար վարելահող ունեցող կոլտնտեսություններում, քան մինչև 200 հեկտար վարելահող ունեցող կոլտնտեսություններում։

Որքան ավելի մեծ լինի կոլտնտեսությունը, այնքան ավելի շատ մեքենաներ կարելի կլինի օգտագործել, այնքան ավելի շատ կարելի կլինի մեքենայացնել կոլտնտեսությունների աշխատանքը։

Մոսկվայի մարզում կա «Տրուդ» անունով մի կոլտնտեսություն, որի մեջ միավորվել են 14 գյուղերի կոլտնտեսություններ։ Այդ խոշոր տնտեսության դաշտերում աշխատում



են 9 տրակտոր, 18 հնձիչ մեքենա, 20 խոտհնձիչ մեքենա, 7 ավտոմեքենա, 3 կալսիչ մեքենա և 12 հացահատիկ զտող մեքենա։ Դրա հարևան՝ Թելմանի անվան կոլտնտեսությունում էլեկտրականության օգնությամբ մեքենայացման են ենթարկվել անասնապահական ֆերմաներին ջուր մատակարարելու և հանրային անասունների համար կեր պատրաստելու աշխատանքները։ Էլեկտրականությամբ են աշխատում՝ քուսպ-մանրիչը, ալրաղացը, սիլոսահատը և այլն։ Էլեկտրակիթը հեշտացրել է կթվորուհիների աշխատանքը։

Աշխատանքի նման մեքենայացումը հնարավորություն է ստեղծում ազատվող բանվորական ուժն օգտագործել այլ աշխատանքներում և ստանալ մեծ տնտեսում։

Խոշոր կոլտնտեսությունների ստեղծումը հնարավորություն է տալիս ոչ միայն լավագույն ձևով օգտագործելու մեքենաները, այլ և, դրա հետ միասին, նա հնարավորություն է տալիս ավելի նպատակահարմար ու արդյունավետ օգտագործելու կոլտնտեսային կադրերը։

Մոսկվայի մարզի Մոժայսկի շրջանի կոլտնտեսությունների միավորման ժամանակ փորձա-կառավարչական և սպասարկող անձ-

նակազմից ազատվել է 315 մարդ։ Այդ մարդիկ այժմ օգտագործվում են արտադրության մեջ։ Վարչա-կառավարչական անձնակազմի այս կրճատումը կոլտնտեսություններին տալիս է հարյուր-հազարավոր ռուբլիների տնտեսում, որն օգտագործվելու է մյուս կարիքների համար։ Բացի դրանից, խոշոր կոլտնտեսությունները կարող են պահել գյուղատնտեսության բոլոր կարգի մասնագետներ՝ ագրոնոմ, զոոտեխնիկ, անասնաբույժ, հողաշինարար-ինժեներ, ջրամատակարարման մասնագետ և այլն։

Խոշոր կոլտնտեսություններում գիտության և տեխնիկայի ճիշտ օգտագործման շնորհիվ անհամեմատ ավելի բարձր բերք է ստացվում, քան մանր կոլտնտեսություններում։ Ահա երկու կոլտնտեսությունների բերքատվության համապատասխան ցուցանիշները. մի կոլտնտեսություն, որն ունի 1772 հեկտար հող, 1949 թվականին յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել է 15,4 ցենտներ հացահատիկ, 191 ցենտներ արմատապտուղ և յուրաքանչյուր կովից՝ 2123 կիլոգրամ կաթ, իսկ մի այլ կոլտնտեսություն, որն ունի 208 հեկտար հող, յուրաքանչյուր հեկտարից ստացել է 9 ցենտներ հացահատիկ, 70 ցենտներ կարտոֆիլ և յուրաքան-



չյուր կովից՝ 1146 կիլոգրամ կաթ, այսինքն՝ կրկնակի չափով պակաս։

Հաշվված է, որ խոշոր կոլտնտեսություններում մեկ հեկտարից ստացված եկամուտը, դրամական արտահայտությամբ, մանր կոլտնտեսություններում ստացվածի համեմատությամբ ավելի է 6,5 անգամ։ Դրա շնորհիվ խոշոր կոլտնտեսությունները կարճ ժամանակամիջոցում վեր են ածվում հարուստ, բազմաճյուղ, բազմակողմանիորեն զարգացած տնտեսությունների։

Այդ մասին պերճախոս կերպով վկայում են փաստերը։

Ուկրաինայի Խերսոնի մարզում կա ընկեր Ստալինի անունը կրող մի կոլտնտեսություն։ Այդ կոլտնտեսությունը միավորում է 17 գյուղատնտեսական արտել, այսինքն՝ 17 գյուղ։ Նա ունի 14.600 հեկտար հող, որից 9200 հեկտար՝ վարելահող, 1000 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 400 խոզ, ավելի քան 8000 ոչխար, մոտ 300 ձի։ Կոլտնտեսային դաշտերում աշխատում են ՄՏԿ-ի 37 տրակտոր։ Կոլտնտեսությունն ունի 15 շարժիչ, 13 բեռնատար ավտոմեքենա, 84 կուլտիվատոր, 22 հացահատիկի և 6 բամբակի շարքացան մեքենա։ Կոլտնտեսությունը կառուցել է երկու էլեկտրակայան։ Բոլոր տե-

սակի գյուղատնտեսական աշխատանքները կատարվում են մեքենաներով։ Մեքենայացման են ենթարկվել նաև ոչխարների խուզման, ջրամատակարարման, կերի պատրաստման աշխատանքները։ Էլեկտրականություն է անցկացվել կոլտնտեսականների մեծ մասի տներում, կուլտ-կենցաղային և արտադրական շենքերում։

Կոլտնտեսությունն ունի 140 հեկտար հատապտուղի այգի, 39 հեկտար խաղողի այգի, 42 հեկտար ջրամբար։ Կոլտնտեսությունում աշխատում են գյուղատնտեսության 5 մասնագետ։

Ուկրաինայի մի այլ խոշոր կոլտնտեսությունում՝ Կամենեց-Պոդոլսկի մարզի Չեմերովեցի շրջանի Լենինի անվան կոլտնտեսությունում հանրային հարստությունը կոլտնտեսության հնարավորություն է ընձեռնել ունենալ ակումբ, որը տեղավորում է 500 մարդ, մանկամսուր՝ 150 մահճակալով, ծննդատուն՝ 15 մահճակալով, ամբուլատորիա՝ 24 մահճակալով, բաղնիք, ռադիոհանգույց և այլն։ Կոլտնտեսությունը պարգևատրվել է Լենինի շքանշանով։ Գերազանց աշխատանքի համար կոլտնտեսականներից 11 հոգի արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման, 256 հո-



գի պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով։

Երկրում օրեց-օր ավելանում է խոշոր կոլտնտեսությունների թիվը։ Համոզվելով այն բանում, որ անհրաժեշտ է խոշորացնել կոլտնտեսությունները, կոլտնտեսականները իրենց ժողովներում որոշումներ են ընդունում նորանոր խոշոր կոլտնտեսություններ ստեղծելու մասին։ Դա մի հզոր մասսայական շարժում է, որ ծավալվել է մեր երկրում, որի հետևանքով խիստ կերպով կրճատվում է մանր կոլտնտեսությունների և ավելանում է խոշոր կոլտնտեսությունների թիվը։

Մոսկվայի մարզում 6000 կոլտնտեսության փոխարեն ստեղծվել է 1700 կոլտնտեսություն, Լենինգրադի մարզում 2000 կոլտնտեսության փոխարեն՝ 600 խոշոր կոլտնտեսություն։

Ռյազանի մարզում ստեղծվել է 1639 խոշորացված կոլտնտեսություն՝ նախկինում եղած 3925 մանր կոլտնտեսությունների փոխարեն։ Այդ փոփոխության շնորհիվ այստեղ յուրաքանչյուր կոլտնտեսությունում միջին հաշվով մեկ և կես անգամ ավելացել է վարելահողերի տարածությունը։ Ամբողջ մարզի կոլտնտեսությունների ֆերմաներում անա-

սունների գլխաքանակն ավելացել է 3—4 անգամ։

Կոլտնտեսությունների խոշորացման գործը լայն ծավալ է ստացել նաև Սովետական Հայաստանում։ Օրինակ՝ Արտաշատի շրջանում ստեղծվել է 33 խոշոր կոլտնտեսություն, որոնցից յուրաքանչյուրը միավորում է նախկին 2—4 կոլտնտեսություն։ Մխչյան գյուղի 26 կոմիսարների անվան կոլխոզը միավորում է 4 գյուղատնտեսական արտել։ Այդ կոլտնտեսությունը ներկայումս մշակում է 390 հեկտար բամբակի ցանք, 180 հեկտար խաղողի այգի, 200 հեկտար հացահատիկային ու բանջարա-բոստանային ցանքեր։ Անասնաբուծական ֆերմաներում կրրկնապատկվել է անասունների գլխաքանակը։ Կոլտնտեսային դաշտերում աշխատում են երկու տրակտորային բրիգադաներ՝ 14 տրակտորով։ Համարյա երկու անգամ ավելացել է մեքենաների արտադրողականությունը։ Կոլտնտեսությունում աշխատում են 2 ագրոնոմ, 1 ագրոտեխնիկ, 1 զոոտեխնիկ, 1 անասնաբույժ, 1 հողաշինարար-ինժեներ և այլ մասնագետներ։

Կոլտնտեսությունը կառուցում է երկհարկանի ակումբ, տնտեսական շենք, պահեստներ, էլեկտրակայան...



կանի ակումբ, տնտեսական շենք, պահեստներ, էլեկտրաաղաց և այլն։

26 կոմիսարների անվան կոլտնտեսությունը Մխչյանի ՄՏԿ-ի օգնությամբ այս տարի օգտագործելի կդարձնի 120 հեկտար ճահճակալած հող։

Դվին գյուղի «Շինարար» կոլտնտեսությունը, որը նույնպես խոշորացված կոլտնտեսություն է, մշակում է 770 հեկտար խաղողի այգի, բամբակի պլանտացիա և այլ կուլտուրաներ, լայնորեն կիրառելով էլեկտրականությունը գյուղատնտեսական աշխատանքներում։

Գետաշեն գյուղի Ստալինի անվան կոլտնտեսությունը միավորման շնորհիվ հնարավորություն ստացավ տարեկան տնտեսել 2500 աշխօր՝ վարչա-կառավարչական անձնակազմի կրճատումից։ Կոլտնտեսության անբաժանելի ֆոնդն այժմ կազմում է 1400 հազար ռուբլի։ Այդ գումարից 650 հազար ռուբլի հատկացված է շինարարական աշխատանքների համար։

Ակնհա են խոշորացված կոլտնտեսությունների առաջին լուրջ հաջողությունները։ Այդ նոր շարժումը հանդիսանում է սովետական մարդկանց, և առաջին հերթին մեր կոլտըն-

տեսականների բարեկեցության հետագա բարձրացման լուրջ հիմքը, սոցիալիստական գյուղատնտեսության մթերատվության հետագա բարձրացման հիմքը։

Խոշոր կոլտնտեսություններին կից ստեղծվում են մշտական շինարարական բրիգադներ, կառուցվում են աղյուսի-կղմինդրի գործարաններ, զանազան արհեստանոցներ։ Իրենց իսկ կոլտնտեսականների ջանքերով ստեղծվում են ագրոքաղաքներ և քաղաքային տիպի ավաններ՝ իրենց բոլոր կոմունալ հարմարություններով և կուլտ-կենցաղային հիմնարկներով։

Սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքի, մեր երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար մղվող պայքարում նոր առաջընթաց քայլ է հանդիսանում ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ «Ոռոգելի հողերը առավել լիակատար օգտագործելու և գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացումը բարելավելու նպատակով ոռոգման նոր սիստեմի անցնելու մասին» որոշումը։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ նախատեսվում է անցում կատարել ոռոգման նոր, առավել պրոգրեսիվ սիստեմի, որը հա-



մապատասխանում է խոշոր մեքենայացված սոցիալիստական հողագործությանը։ Նոր սիստեմի առավելությունը հանդիսանում է ոռոգելի հողերի առավել ռացիոնալ օգտագործումը և գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման բարելավումը։

Կոլտնտեսությունների խոշորացումը մի նոր քայլ է գյուղի և քաղաքի միջև, ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած տարբերությունը վերացնելու ուղղությամբ, որովհետև այդ պրոցեսը գնալով ավելի մեծ չափով գյուղատնտեսական աշխատանքը դարձնում է ինդուստրիալ աշխատանքի տարատեսակը։

Խոշոր կոլխոզների ստեղծումը՝ պարտիայի, կառավարության, ընկեր Ստալինի հոգատարության մի նոր դրսևորումն է ՍՍՌՄ-ի տնտեսական-ռազմական հզորությունն ամրապնդելու և մեր երկրում կոմունիստական հասարակություն կառուցելու գործում։

## ԱՃՈՒՄ ԵՎ ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ Է ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ

*Անդրկովկասի ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, որի հիմքերը դրել են Լենինը և Ստալինը, ամուր է ու անխորտակ։ Այդ բարեկամությունն ամրապնդված է ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին վրացի, հայ և ադրբեջանցի աշխատավորների համատեղ թափած արյունով, զոդված է Անդրկովկասի պրոլետարիատի համատեղ հերոսական պայքարով՝ ընդդեմ ցարիզմի, կալվածատերերի և բուրժուա-նացիոնալիստական տարրերի։*

*Այդ բարեկամությունն ամրապնդվել ու զարգացել է սոցիալիստական շինարարության տարիներին, նրա ամրությունը ստուգվել Հայրենական Մեծ պատերազմում։*

*Հետպատերազմյան ժամանակաշրջանում, խաղաղ ստեղծագործական աշխատանքի շրջանում է՛լ ավելի է ամրանում և բարգա-*



*վաճում Անդրկովկասի ժողովուրդների բարեկամությունը՝ հնգամյա աշխատանքների ստալինյան պլանը ժամկետից շուտ կատարելու համար մղվող համաժողովրդական պայքարում։ Անդրկովկասի ռեսպուբլիկաների աշխատավորների միջև ծավալվող սոցիալիստական եղբայրական մրցությունը, նրանց արտադրական փոխադարձ օգնությունը ավելի սերտորեն է ամրապնդում այդ ժողովուրդների բարեկամությունը։*

*Ժողովուրդների բարեկամության վառ օրինակ է հանդիսանում Հայաստանի և Վրաստանի եղբայրական ռեսպուբլիկաների երկու քաղաքների՝ Լենինականի և Քութայիսիի միջև ծավալվող սոցիալիստական մրցությունը։ Այդ երկու քաղաքների աշխատավորները, մրցելով միմյանց հետ, պարտավորություն են ստանձնել ժամկետից շուտ կատարել իրենց արտադրական, ինչպես նաև քաղաքների բարեկարգման պլանները։*

*«Ինդուստրիալ Քութայիսի» թերթը իր էջերում վերջերս տպագրել էր բազմաթիվ նյութեր, ուր ցույց էր տրված Լենինական քաղաքի աշխատավորության պայքարը հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար։*

*Լենինականի «Բանվոր» թերթն էլ իր հեր-*

թյուն լայնորեն լուսաբանում է Քութայիսի քաղաքի աշխատավորների նվաճումները։ Թերթն իր համարներից մեկը նվիրել է Քութայիսի աշխատավորության ձեռք բերած նվաճումներին։

Եղբայրական ռեսպուբլիկաների երկու քաղաքների սոցիալիստական մրցությունը նպաստում է Վրաստանի և Հայաստանի աշխատավորների ինտերնացիոնալ կապերի ամրապնդմանը, օգնում է մրցողներին կատարելու ու գերակատարելու արտադրական պլանները և ավելի սերտորեն համախմբվելու ժողովուրդների ստալինյան մեծ բարեկամության դրոշի ներքո։

Աճում է Անդրկովկասի ժողովուրդների տնտեսագործական համագործակցությունը։ Այդ համագործակցությունը վերածվում է աշխատանքի առաջավոր մեթոդների յուրացման, փորձի փոխանակման մի հզոր շարժման։ Կախեթիայի խաղողագործները, Աջարիայի և Աբխազիայի մերձարևադարձային պտուղների բարձր բերքի վարպետները, Վրաստանի ծխախոտագործները, Հարավային Օսեթիայի անասնապահները հետաքրքրվում են Հայաստանի կոլխոզային դաշտերի անվանի վարպետների նվաճումներով, մրցում են նրանց հետ՝ հասնելու նոր հաջո-



ղությունների, կատարում են փորձի փոխանակություն, օգնում միմյանց։

«Ժողովուրդների ստալինյան բարեկամությունը մեծ ուժ է։ Մեր կոլխոզի կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները ամուր բարեկամություն են հաստատել ձեր գյուղի կոլխոզնիկների ու կոլխոզնիկուհիների հետ։ Մեր կոլխոզնիկները մեծ հարգանքով են խոսում ձեր մասին, ընդօրինակում են ձեր փորձը։ Մեր կոլխոզնիկների ու կոլխոզնիկուհիների բոլոր գործերում նկատելի է սովետական մարդկանց հատուկ մի ձգտում՝ է՛լ ավելի գեղեցիկ, է՛լ ավելի հզոր դարձնելու մեր սիրելի Հայրենիքը»— այսպես են գրում Վրացական ՍՍՌ Մախարաձեի շրջանի Նաթանեբի գյուղի Բերիայի անվան կոլխոզի կոլխոզնիկներին ուղղված իրենց նամակում Հայկական ՍՍՌ Հոկտեմբերյանի շրջանի Փոքր Շահրիար գյուղի կոլխոզնիկները։

Եղբայրական երկու ռեսպուբլիկաների կոլխոզների միջև ծավալվող սոցիալիստական մրցության շնորհիվ շատ բան է փոխվել այդ կոլխոզներում, հսկայական չափով աճել է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, հարստացել են կոլխոզ-

ներն ու կոլխոզնիկները, բարեկարգվել են գյուղերը։

Մեզ միավորում է մեծ բարեկամությունը, մենք սովորում ենք միմյանցից,— այսպես են ասում կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները։

Վերջերս Ադրբեջանական ՍՍՌ Լենքորանի շրջանի «Պրավդա»-ի անվան կոլխոզի երիտասարդ կոլխոզնիկներն ստացան Վրացական ՍՍՌ Զուգդիդի շրջանի Բերիայի անվան կոլխոզի կոմերիտականների կոլեկտիվ նամակը, որով նրանք առաջարկում էին սոցիալիստական մրցություն սկսել միմյանց հետ։ Վրաստանի կոմերիտականներն իրենց նամակում պատմում էին, թե ինչպես նրանք կիրառելով աշխատանքի սոցիալիստական մեթոդները, թեյի բարձր բերք են աճեցրել իրենց պլանտացիաներում։ Յուրաքանչյուր հեկտարից նրանք ստացել են 5600 կիլոգրամ թեյատերև։ Կոլխոզի եկամուտները տարեց տարի աճում են և ներկայումս հասնում են 9 միլիոն ռուբլու։

Եղբայրական Վրաստանի կոմերիտականների նամակը քննության առնվեց «Պրավդա» կոլխոզի երիտասարդության ժողովում։ Ադրբեջանի երիտասարդ հայրենասերները խոսք տվին՝ երկրին այս տարի տալ 65 տոն-



նա թեյ, այսինքն՝ 26 տոննա ավելի, քան անցյալ տարի։

Երկրորդ տարին է, որ իրար հետ մրցում են Երևանի էլեկտրամեքենաշինական և Բաքվի էլեկտրամեխանիկական գործարանները։ Եղբայրական այդ սոցիալիստական մրցության մեջ երևանցիները կարողացան լավ արդյունքների հասնել։ Նրանք յուրացրին արտադրանքի նոր տեսակների թողարկումը, բարձրացրին աշխատանքի արտադրողականությունը, մեծ ուշադրություն են նվիրում արտադրության կուլտուրայի բարձրացմանը։ Կառուցվել են բանվորների համար հիվանդանոց և սպորտի ակումբ։ Մինչև 1950 թվականի վերջը շահագործման կհանձնվի ավելի քան 1500 քառ. մետր բնակելի տարածություն։ Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանը մի քանի անգամ հաղթող է ճանաչվել Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ։

Երկրորդ տարին է, որ իրար հետ մրցում են նաև Թբիլիսիի և Երևանի դազգահաշինական գործարանների կոլեկտիվները։ Այդ գործարանների բանվորները և ինժեներատեխնիկական աշխատողները, փորձի լայն

փոխանակման հիման վրա, բարձրացրել են աշխատանքի արտադրողականությունը։

Այսպիսի օրինակներն ու փաստերը բազմաթիվ են։

Տարեց-տարի ավելի լայն թափ ու ծավալ է ստանում Անդրկովկասի գիտնականների ստեղծագործական համագործակցությունը։ Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիան ստեղծագործական սերտ կապ է պահպանում Ադրբեջանական ՍՍՌ և Վրացական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիաների հետ։ Սիստեմատիկ նամակագրությունների և փոխադարձ այցելությունների միջոցով գիտնականները սերտ կապ են ստեղծում միմյանց հետ։ Նրանք համատեղ մշակում են մի շարք գիտական պրոբլեմներ, ծանոթանում են գիտա-հետազոտական ինստիտուտների աշխատանքներին։ Եղբայրական ռեսպուբլիկաների գրականության և արվեստի լավագույն երկերը դառնում են Անդրկովկասի բոլոր ժողովուրդների սեփականությունը։ Թե գրականության ու արվեստի, և թե տեխնիկայի ու գիտության բնագավառում հանդես եկող յուրաքանչյուր նոր տաղանդավոր ստեղծագործություն արժանանում է Անդրկովկասի



բոլոր ժողովուրդների ընդունելությանը որպես մի բերկրալից երևույթ։

Տարեց-տարի աճում և ամրապնդվում է ժողովուրդների մեծ բարեկամությունը։ Մեծ Ստալինն է Սովետական Միության ժողովուրդների այդ ամրակուռ, եղբայրական բարեկամության ստեղծողը, ոգեշնչողը, դրոշը։ Մեծ Ստալինի անունը՝ սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնության, ամբողջ աշխարհի ազատասեր ժողովուրդների ինտերնացիոնալ համախմբվածության սիմվոլն է։

Ստալինի մասին, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության ոգեշնչողի ու ստեղծողի մասին հորինված բանաստեղծություններն ու երգերը հնչում են ամենուրեք։ Բանաստեղծներն ու ժողովրդական տաղերգուները այդ բանաստեղծություններում ու երգերում գովերգում են ստալինյան արևի տակ ծաղկող մեր երջանիկ, բերկրալից և ունևոր կյանքը։

Մեր ապրած հիանալի ժամանակներում, երբ Անդրկովկասի բոլոր ժողովուրդները համախմբվել են Սովետական Միության ժողովուրդների բարեկամությամբ ու սիրով զոդված մեծ ընտանիքում, երգեր ու բա-

նաստեղծություններ են հորինվում բոլոր ժողովուրդների լեզուներով։ Այդ երգերն ու բանաստեղծությունները ամբողջ աշխարհին պատմում են լենինյան գործի հաղթանակի և ստալինյան օրերի փառապանծ գործերի մասին։

Այդ բանաստեղծությունների ու երգերի մեջ հնչում է նաև երջանիկ Սովետական Հայաստանի բանաստեղծների ու գուսանների ձայնը, որոնց միջոցով ժողովուրդը երգում է ժողովուրդների ստալինյան բարեկամության մեծ ուժը։

Ա. ԽՈՍՐՈԵՎ

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ՊԱՅՔԱՐ ԳՈՐԾԱՐԱՆԻ ՄԱՐԿԱՅԻ ՀԱՄԱՐ

Ահա մեկ տարուց ավելի է, ինչ Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը, արտադրական պլանները քանակական և որակական բարձր ցուցանիշներով կատարելու համար, հաղթող է դուրս գալիս Համամիութենական սոցիալիստական մրցությունից և իր ձեռքումն է պահում Միութենական փոխանցիկ դրոշը։

Այս տարվա անցած 7 ամիսների պլանը գործարանը կատարել է 111 տոկոսով, թողարկելով 45 տոկոսով ավելի արտադրանք, քան անցյալ տարվա նույն ժամանակվա ընթացքում։ Այդ նույն ժամանակաշրջանում բանվորների աշխատանքի արտադրողականությունը, 1949 թվականի առաջին 7 ամիսների համեմատությամբ, աճել է 34,8 տոկոսով։

Գործարանի կոլեկտիվը քանակական ցուցանիշների հետ միասին պայքարում է նաև արտադրանքի որակի համար, գործարանի

մարկայի պատիվը բարձր պահելու համար։ Եվ այդ բնագավառում ևս գործարանի ձեռք բերած հաջողությունները զգալի են։ Այդ մասին են վկայում գործարանի արտադրանքը սպառողներից ստացված բազմաթիվ նամակները, որտեղ նրանք իրենց գոհունակությունն են հայտնում բարձրորակ գեներատորների և տրանսֆորմատորների համար։

Ահա այդ նամակներից մեկը, որն ուղարկել է Ակտյուբինսկ քաղաքի շինարարական դրասենյակը.

«Ձեր գործարանի պատրաստած գեներատորները մենք դրեցինք կոլտնտեսային էլեկտրակայաններում. Նրանք անխափան կերպով էլեկտրաէներգիա են մատակարարում կոլտնտեսային արտադրությանը, լուսավորում կոլտնտեսականների բնակարանները։ Ընդունեցեք կոլտնտեսականների և մեր խորին շնորհակալությունը՝ գերազանց որակի գեներատորների համար»։

Այսպիսի նամակները մեծ ոգևորություն են առաջացնում գործարանի բանվորների և բոլոր աշխատողների մեջ։ Այդ նամակները բանվորների համար իրենց զրույցների ժամանակ կարդում են ագիտատորները և, օգտագործելով առիթը, ավելի լայնորեն են



ծավալում ագիտացիան գործարանի մարկայի պատիվը բարձր պահելու համար։

Գործարանի մարկայի պատվի համար պայքարելու լավագույն օրինակ է տալիս տրանսֆորմատորների ցեխի նախապատրաստական մասը, որտեղի ագիտատորն է ընկ. Ա. Գևորգյանը։ Արտադրանքի որակի շուրջը կազմակերպած նրա զրույցները կոնկրետ են, շոշափում են առօրյա, բաժանմունքի բանվորների աշխատանքին վերաբերող հարցեր։ Այդ զրույցներով ագիտատորը օգնում է բանվորներին վերացնելու նկատված թերությունները, տալու բարձրորակ արտադրանք։

Սիստեմատիկ կերպով բարձրորակ արտադրանք տալու համար տրանսֆորմատորների ցեխի նախապատրաստական մասն այժմ աշխատում է առանց տեխնիկական վերահսկողության բաժնի աշխատակցի հսկողության։ Այդ հաջողության մեջ իր մեծ բաժինն ունի ցեխի ագիտատոր ընկ. Գևորգյանը։

«Բարձր պահենք գործարանի մարկայի պատիվը» թեմայով իր զրույցներից մեկի ժամանակ գեներատորների հավաքման ցեխի ագիտատոր ընկ. Վ. Մովսիսյանն ասաց.

Մեր թողարկած գեներատորների որա

կլի վերաբերյալ մենք մեր սպառողներից դեռևս բացասական գնահատական չենք ստացել, բայց այդ չպետք է մեզ հանգստացնի։ Որքան էլ որ լավ որակի լինեն մեր պատրաստած գեներատորները, միշտ էլ կարելի է նրանցից ավելի լավը պատրաստել— ահա այսպես պետք է մտածի մեզանից յուրաքանչյուրը։ Իսկ եթե մենք հանգստանանք մեր ձեռք բերած հաջողությամբ, ապա մենք հետ կմնանք և չենք բավարարի մեր սպառողի պահանջները։

Այ, թեկուզ ընկեր Վալոդյա Հարությունյանի օրինակը։ Երեկ փորձարկումից հետ վերադարձավ նրա հավաքած գեներատորը։ Իսկ ի՞նչն էր պատճառը։ Պատճառն այն էր, որ ընկ. Վարդանյանն իր անուշադրության հետևանքով ինչպես հարկն էր չէր ամրացրել պտուտակները։ Իսկ եթե այդ պտուտակները մի կերպ դիմանային փորձարկման ժամանակ, ապա նրանք գեներատորի աշխատանքը կխափանեին արտադրության մեջ։ Իսկ ի՞նչ կասեր այն ժամանակ սպառողը մեր գործարանի մարկայի մասին...

Ագիտատորի այս զրույցից հետո Վ. Հարությունյանի հավաքած գեներատորներն այլևս հետ չեկան փորձարկումից։

Արտադրանքի որակի համար օրինակելի



պայքար են կազմակերպում նաև № 6 ցեխի ագիտատորներ ընկերներ Ս. Մելիք-Սահակյանը և Գ. Շահբազյանը։ Այս ագիտատորների նախաձեռնությամբ ցեխում կիրառվում է արտադրանքի որակի հաշվառման «բալային» սիստեմ։ Տեխնիկական վերահսկողության բաժնի կողմից ցեխի յուրաքանչյուր բանվորի արտադրանքին տրվում է գնահատական։ Ագիտատորներն այդ գնահատականը գրում են ցուցանիշների հատուկ տախտակի վրա և այդպիսով յուրաքանչյուր օր ցեխի բանվորներին հայտնի է դառնում, թե ով ինչ որակի արտադրանք է տալիս։ Ագիտատորների օգնությամբ ցեխում լայն պայքար է ծավալված «5» թվանշան ստանալու, այսինքն գերազանց որակի արտադրանք տալու համար։

Եթե ցեխի աշխատողներից որևէ մեկը ցածր թվանշան է ստանում, ագիտատորներ Մելիք-Սահակյանը և Շահբազյանը խոսում են նրանց հետ, օգնում, որպեսզի այդ այլևս չկրկնվի։ Այսպես օրինակ, երիտասարդ բանվոր Ս. Վարդանյանը, որը շարունակ «3» գնահատական էր ստանում, ագիտատոր Վարդանյանի օգնությամբ սկսեց ավելի լավ աշխատել և այժմ տալիս է միայն բարձրորակ արտադրանք։

Յուրաքանչյուր գործարանի մարկայի պատիվը բարձր պահելու համար մեծ նշանակություն ունի նաև այն, թե ինչպիսի արտաքին տեսք ունի նրա թողարկած արտադրանքը։ Մեր գործարանի արտադրած տրանսֆորմատորներին և գեներատորներին արտաքին գեղեցիկ տեսք տալու համար անհրաժեշտ է, որպեսզի նրանք ներկվեն բարձր որակով։ Գործարանի ներկողների բրիգադան ամեն ջանք գործ էր դնում, որպեսզի գեներատորների ու տրանսֆորմատորների վրա ներկը նստեր հարթ կերպով, որպեսզի այն ունենար գեղեցիկ գույն և փայլ։ Սակայն գործարանի աշխատողներին չէր բավարարում թողարկվող արտադրանքի արտաքին տեսքը. այդ մասին հաճախակի էր խոսվում կոլեկտիվի ժողովներում։ Վերջերս գործարանի դիրեկցիան ձեռք բերեց ներկելու նոր սարքավորում, որի շնորհիվ շեշտակի կերպով բարելավվեց մեր արտադրանքի նաև արտաքին տեսքը։

Ն. ՄԱՐԳԱՐՅԱՆ

Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի ագիտկոլեկտիվի ղեկավար

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ ՆՈՐԱԿԱՌՈՒՅՑՆԵՐՈՒՄ

Մեր ռեսպուբլիկայի քաղաքներում ու գյուղերում լայնորեն ծավալվել է արդյունաբերական նոր ձեռնարկությունների, ՄՏ կայանների, բնակելի տների, կուլտուրական հիմնարկների, դպրոցական ու առողջապահական շենքերի շինարարությունը։

Օրավուր բարելավվում են աշխատավորության բնակարանային-կենցաղային պայմանները, հարյուրավոր ու հազարավոր ընտանիքներ ստանում են նոր, բարեկարգ ու գեղեցիկ բնակարաններ։

Կառուցող բանվորները, մտնելով Հայաստանում սովետական իշխանության հաստատման 30-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, պայքարում են այս տարվա շինարարական պլանները ժամկետից շուտ և բարձր որակով կատարելու, շինարարության արժեքն իջեցնելու համար։

Շինարարական աշխատանքների այս և-

ռուն շրջանում ագիտատորները պետք է օգնեն կառուցողներին՝ կատարելու իրենց վերցրած պարտավորությունները, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, լրիվ օգտագործելու շինարարական մեխանիզմները, մեքենայացնելու աշխատանքի պրոցեսները, տիրապետելու շինարարական աշխատանքների նորագույն մեթոդներին ու ձևերին, սիստեմատիկորեն իջեցնելու կառույցների արժեքը:

Ագիտատորներն իրենց զրույցների ընթացքում պետք է լայնորեն մասսայականացնեն առաջավոր բրիգադների, ստախանովական բանվորների փորձը, ձգտելով բոլոր կառուցողների սեփականությունը դարձնել այն:

Այս տեսակետից ուշագրավ է Երևանի փակ շուկայի շինարարական կոլեկտիվի մեջ աշխատող ագիտատորների աշխատանքի փորձը: Այստեղ բոլոր բրիգադները և բանվորները, ագիտատորների օգնությամբ, կրնքել են սոցիալիստական մրցության պայմանագրեր: Կառուցող բանվորները, մտնելով Սովետական Հայաստանի 30-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, պարտավորվել են մինչև նոյեմբերի 29-ը ավարտել շուկայի շինարա-



րական աշխատանքները և այն հանձնել շահագործման: Այդ պարտավորությունը պատվով կատարելու համար ագիտատորներն իրենց զրույցների ընթացքում մասսայականացնում են սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը, խրախուսում և տարածում են առաջավորների փորձը, այն դարձնում մյուս կառուցող բանվորների սեփականությունը: Ագիտատորների նախաձեռնությամբ ստեղծվել է միջ-բրիգադային փոխանցիկ Կարմիր Դրոշակ:

Ագիտատորներ Ս. Համբարձումյանը, Ռ. Սարգսյանը, Հ. Մկրտչյանը իրենց ամենօրյա զրույցներին զուգընթաց լայնորեն կիրառում են նաև ցուցադրական ագիտացիայի բազմազան ձևերը, լույս են ընծայում պատի թերթը, բրիգադային խլիչովկաները, որտեղ լուսաբանում են ստախանովական բանվորների արժեքավոր նախաձեռնությունները: Ամենուրեք տեսնում ես ցուցափեղկերի, առաջավորների ցուցատախտակների վրա գրված ցայտուն թվեր, որոնք ցույց են տալիս կառուցող բանվորների պլանների կատարողականը: Ցուցանիշների տախտակի վրա ամեն օր գրվում է առանձին բանվորների, բրիգադների պլանների կատարու-

դնականը: Այդպիսով յուրաքանչյուր բանվոր տեսնում է, թե ինչպես է աշխատել ինքը, իր բրիգադան և ով որքան է օրվա ընթացքում վաստակել:

Բանվորների համար ագիտատորները ընդմիջումների ժամանակ, աշխատանքը սկսելուց առաջ ամեն օր բրիգադաներում անց են կացնում զրույցներ, բանվորներին ծանոթացնում են մամուլում եղած կարևոր նյութերի հետ: Ագիտատորներն իրենց զրույցների ժամանակ բանվորներին ոչ միայն պարզաբանում են կոլեկտիվի առաջ դրված խնդիրները և հարցերը, ոչ միայն համոզում, այլև քննադատում են հետ մնացողներին, անվորակ աշխատանք կատարողներին, աշխատանքի ժամերը լրիվ չօգտագործողներին: Օրինակ, ագիտատոր Ա. Համբարձումյանը շատ լավ գիտի իր բրիգադայում աշխատող բանվորներին: Մարտ և ապրիլ ամիսներին բրիգադայի բանվորներ Ա. Նշխազարյանը և Ե. Մանուկյանը սիստեմատիկ կերպով թերակատարում էին իրենց պլանները, իսկ նրանց կողքին աշխատող բանվորներ Կ. Քալամքարյանը, Ա. Հարությունյանը, Ս. Մանուկյանը, Շ. Պետրոսյանը և ուրիշներ իրենց պլանները կատարում էին 200—250



տոկոսով: Ագիտատոր Համբարձումյանը ուշադիր կերպով հետևելով հետ մնացող բանվորների աշխատանքին պարզեց, որ Ա. Նշխազարյանը և Ե. Մանուկյանը լրիվ չեն օգտագործում աշխատանքի ժամերը: Այդ բանվորների վատ աշխատանքի մասին ագիտատորը խոսեց կոլեկտիվի ընդհանուր ժողովում, ուր բանվորները խիստ քննադատեցին նրանց՝ վատ աշխատանքի համար: Մանուկյանը և Նշխազարյանը ժողովում կոլեկտիվի առաջ խոստացան հասնել իրենց ընկերներին և իրոք, մայիս և հունիս ամիսներից սկսած նրանք իրենց պլանները կատարում են 130—150 տոկոսով:

Քաղաքական-մասսայական աշխատանքի այսպիսի լավ դրվածքի շնորհիվ փակ շուկայի կառուցողների կոլեկտիվը սիստեմատիկ կերպով կատարում և գերակատարում է շինարարական պլանները: Շինարարության 1950 թ. առաջին եռամսյակի պլանը կատարվեց 163 տոկոսով, ապրիլ ամսի պլանը՝ 143,5 տոկոսով, մայիս և հունիս ամիսների պլանները՝ 142 տոկոսով: Պլանները բարձր ցուցանիշներով կատարելու և գերակատարելու համար Երևանի Քաղաքային Սովետի փոխանցիկ Կարմիր Դրոշը արդեն 3-րդ ա-

միշն է, ինչ դանվում է շուկան կառուցող բանվորական կոլեկտիվի ձեռքում։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի լավ օրինակ է տալիս Քաղշինի № 39—40—41 բնակելի շենքի ագիտկոլեկտիվը, որի ղեկավարն է ընկ. Վ. Գևորգյանը։ Այդ շենքի վրա աշխատող բոլոր բրիգադաներն էլ ունեն իրենց ագիտատորները։ Ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Գևորգյանը ագիտատորների համար սիստեմատիկ կերպով կազմակերպում է սեմինար պարապմունքներ, տալիս է հրահանգչական ղեկուցումներ, մեթոդական ցուցումներ։

Տրնարարության մեջ աշխատող բոլոր բրիգադաները և բանվորները ընդգրկված են սոցիալիստական մրցության մեջ, ունեն անհատական պայմանագրեր։ Սոցիալիստական մրցության մեջ մտնելով Քաղշինի № 42—43—44 բնակելի շենքը կառուցող կոլեկտիվի հետ, նրանք պարտավորվել են նոր կառուցվող 56 բնակարանից բաղկացած շենքի շինարարական աշխատանքները ավարտել Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 30-րդ տարեդարձի օրը՝ նոյեմբերի 29-ին։

Տրնարարության բոլոր բրիգադաներում



տարվող իրենց ագիտացիոն-մասսայական աշխատանքով ագիտատորները ամենօրյա օգնություն են ցույց տալիս բանվորներին՝ վերցրած պարտավորությունը պատվով կատարելու համար։

Այցելելով Հաղթանակի մոնումենտի շինարարությունը և ուսումնասիրելով նրա կոլեկտիվի աշխատանքի լավագույն փորձը, ագիտատորներն այդ փորձը տեղափոխեցին իրենց մոտ և լավ արդյունքների հասան հատկապես մեխանիզմների օգտագործման գործում։

Սակայն դեռևս կան շինարարական կոլեկտիվներ, որտեղ անբավարար են կազմակերպվում բանվորների մեջ տարվող քաղաքական-բացատրական աշխատանքները։ Երևանի Կուլտուրայի տան վերակառուցման վրա աշխատող բանվորների մեջ, օրինակ, ամսվա ընթացքում կազմակերպվում է 4—5 զրույց միայն։ Այստեղ ամբողջ կոլեկտիվի համար առաջադրված է միայն մեկ ագիտատոր։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքը վատ է կազմակերպված նաև № 42—43—44 բնակելի շենքի կառուցող բանվորների մեջ։ Այստեղ նույնպես 160—170 բանվորների

մեջ ագիտացիոն աշխատանք տանելու համար առաջադրված է մեկ ագիտատոր, որը բավարարվում է միայն թերթերի բարձրաձայն ընթերցումով։

Շինարարական կոլեկտիվների ագիտատորների մարտական խնդիրն է՝ շինարարական սեզոնի այս նպաստավոր և վճռական ամիսներին լայնորեն կիրառելով քաղաքական ագիտացիայի բոլոր ձևերն ու մեթոդները, մոբիլիզացնել կառուցող բանվորների ուժերը 1950 թվականի շինարարական պլանները ժամկետին և բարձր ցուցանիշներով կատարելու համար։

Ն. ՍԱՀԱԿՅԱՆ

---

# ԿՈԼՈՐԱԴՅԱՆ ԲԶԵԶԻ ՄԱՍԻՆ

Կարտոֆիլի կոլորադյան բզեզը գյուղատնտեսական բույսերի ամենավտանգավոր վնասատուներից մեկն է։ Իր անունը նա ստացել է ամերիկյան Կոլորադո նահանգից։ Անցյալ դարի առաջին կեսերին այդ վնասատուն առաջին անգամ Կոլորադո նահանգում ամայացուցիչ վնաս հասցրեց կարտոֆիլի ցանքերին։

Կոլորադյան բզեզի մարմինը ձվաձև է, վերևի մասը ուռուցիկ է, իսկ ներքևի մասը՝ տափակ։ Իր ձևով նա նման է մի մեծ զատիկի։ Հիմնականում լինում է դեղին, շագանակագույն։ Նրա թևերից յուրաքանչյուրի վրա կա հինգ երկայնակի սև զոլավոր գիծ, որոնց միջև, հավասար հեռավորությամբ, ընկած է հինգ դեղին զոլավոր գիծ՝ համարյա նույն լայնությամբ։ Այդ բնորոշ հատկանիշը կոլորադյան բզեզին տարբերում է մնացած բոլոր այն բզեզներից, որոնք լինում են կարտոֆիլի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների դաշտերում։

Որձ բզեզի մարմնի երկարությունն է 7-ից մինչև 16 միլիմետր, իսկ էգինը՝ 8-ից մինչև 12 միլիմետր։ Լայնությունը հասնում է 6—7 միլիմետրի։

Ձուն երկարավուն է, կլոր ծայրերով։ Ձվի գույնը

սկզբում լինում է բաց դեղնավուն, իսկ հետո՝ բաց նարնջագույն։

Կոլորադյան բզեզի հասուն թրթուրը (որդը) ունի մոտ 1,5 սանտիմետր երկարություն։ Թրթուրի մարմինը մածուցիկ է, մսեղ, վերևի մասը ուռուցիկ, իսկ ներքևինը՝ տափակ։ Որովայնինը այնքան փքված է, որ կողքից նայելիս թվում է, թե թրթուրը սապատավոր է։ Թրթուրն սկզբում հիմնականում լինում է կարմիր գույնի, իսկ այնուհետև, մեծանալուց հետո, դառնում է դեղին-նարնջագույն, կամ կարմիր-նարնջագույն։

Թրթուրի հարսնյակը վարդագույն է, կամ դեղին-նարնջագույն, որն իր տեսակով ներկայացնում է այսպես բզեզի նկարագիրը։

Կարտոֆիլի կոլորադյան բզեզը ձմեռում է բացառապես գետնի տակ, 18-ից մինչև 70 սանտիմետր խորությամբ՝ նայած հողի տեսակին և ջերմաստիճանին։

Վաղ գարնանը բզեզները արթնանում են ձմեռային քնից և դուրս գալիս գետնի երեսը։

Ձմեռումն անցկացրած սերնդի էգ բզեզն օժտված է մեծ պտղաբերությամբ։ Իր գոյության ընթացքում նա դնում է միջին հաշվով 400—600 ձու։ Քիչ չեն դեպքերը, երբ նա դնում է 1000—1200 ձու և նույնիսկ դրանից էլ շատ։ Ձվից դուրս գալուն պես թրթուրներն անհապաղ սկսում են բույսերի թփերի խժռումը։ Թրթուրի աճման հետ միասին, որը տևում



է 16-ից մինչև 25 օր, արագորեն աճում է նրա շատակերությունը։ Հարսնյակավորման համար թրթուրը խոր կերպով մտնում է գետնի տակ և 6—15 օր հետո հարսնյակը դառնում է բզեզ, որը դուրս է գալիս գետնի երեսը և նույնպես սկսում ուտել բույսերը։ Ձմեռման համար բզեզները նորից թափանցում են հողի ներքին շերտերը և լավ դիմանում են նույնիսկ ցածր ջերմաստիճանին։

Կարտոֆիլը բոլոր բույսերից կոլորադյան բզեզի և նրա թրթուրի ամենասիրած բույսն է, որին նրանք վնասում են։ Կարտոֆիլի բույսով սնվելով, բզեզն ավելի արագ է աճում և ավելի է մեծանում նրա պտղաբերությունը։ Այդ վնասատուն սնվում է նաև ուրիշ բույսերով, օրինակ՝ տոմատով, որոնք, ինչպես և կարտոֆիլը, պատկանում են մորմային բույսերի ընտանիքին։

Կոլորադյան բզեզը, այդ չափազանց պտղաբեր և ստկալի շատակեր վնասատուն, հսկայական վնաս է հասցնում կարտոֆիլի կուլտուրային բոլոր այն երկրներում, որտեղ նա տարածված է։

Կարտոֆիլի այն թփերից, որոնց վրա հարձակվում են կոլորադյան բզեզը և նրա թրթուրը, սովորաբար համարյա ոչինչ չի մնում։ Եթե բզեզներն ու թրթուրները տիրում են դաշտին, ապա մի քանի օրից հետո ամբողջովին անհետանում է կանաչը, դաշտը սևանում է և այնտեղ կանգնած են մնում սոսկ մերկ ցողունները։

Սնունդ փնտրելով, բզեզները օրական թռչում-անցնում են 500 մետր տարածություն, իսկ եթե գնում են քամու հոսանքի ուղղությամբ, անցնում են ավելի մեծ տարածություն։ Ջրի տակ բզեզները իրենց գոյությունը կարող են պահպանել 40 ժամից մինչև 4,5 օր, իսկ ջրի երեսին՝ մինչև 10 օր։ Բզեզների այդ կենսունակությունից էլ օգտվեցին ամերիկյան իմպերիալիստները, ինքնաթիռներից բզեզներ ցած գցելով Բալթիական ծովը, որպեսզի մասսայորեն վարակեն Լեհական ռեսպուբլիկայի տերիտորիան։

Ֆրանսիայում և Բելգիայում կոլորադյան բզեզը ամեն տարի ոչնչացնում է կարտոֆիլի բերքի ավելի քան 30 տոկոսը, Արևմտյան Գերմանիայում՝ ավելի քան 50 տոկոսը։ Արևմտյան Գերմանիայի շատ շրջաններում կոլորադյան բզեզն այս տարի լրիվ ոչնչացրել է կարտոֆիլի բոլոր ցանքերը։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, որտեղ ամենուրեք տարածված է այդ վնասատուն, կոլորադյան բզեզը ամեն տարի կարտոֆիլի ցանքերին տասնյակ միլիոն դոլարների վնաս է հասցնում։

Վնասատուի հենց այս շատակերությունն է, որ պատերազմի ամերիկյան հրձիգները որոշեցին օգտագործել, որպեսզի խանգարեն Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի տնտեսական զարգացմանը, խափանեն նրա բնակչության պարենային մատակարարումը։

Մայիսի 22-ից սկսած ամերիկյան դիվերսանտնե-



րը Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի տերիտորիայի վրա ցած են գցել հսկայական քանակությամբ կոլորադյան բզեզներ։ Միայն մի քանի օրում հայտնաբերվել և ոչնչացվել է մոտ 400 հազար բզեզ։

Վերջերս մեր մամուլում հաղորդագրություն հրապարակվեց, որ պատերազմի ամերիկյան հրձիգները շարունակում են ինքնաթիռներից կոլորադյան բզեզներ ցած գցել Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի տերիտորիայի վրա։ Հուլիսին ռեսպուբլիկայի մի քանի շրջաններում հայտնաբերվեցին ամերիկյան հանցագործներին մերկացնող նոր իրեղեն ապացույցներ՝ պարաշյուտ, ջարդված անոթ և այն օդապարիկի մնացորդները, որոնց վրա սողում էին կոլորադյան բզեզներն ու նրանց թրթուրները։

Ամերիկյան դիվերսիայի հետևանքով կոլորադյան բզեզը բույն է դրել Գերմանիայի շատ շրջաններում, Լեհաստանում, Չեխոսլովակիայում, Ավստրիայում և անմիջական վտանգ է սպառնում Հունգարիային, Ռումինիային և Բուլղարիային։

Սովետական Միությունը անհապաղ օգնության հասավ ամերիկյան դիվերսիայից տուժած երկրներին։ Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայում, Լեհաստանում և Չեխոսլովակիայում մեծ, հաջող աշխատանք է կատարվում կոլորադյան բզեզի օջախները ոչնչացնելու և ամերիկյան իմպերիալիստների հանցագործության հետևանքները վերացնելու համար։

*Կոլորադյան բզեզի դեմ պայքարելու հիմնական միջոցը վնասված դաշտերում թունավոր նյութեր շաղ տալն է և դաշտերի վարակազերծումը։*

*Մեր սոցիալիստական գիտությունը և կոլխոզային պրակտիկան հսկայական փորձ են կուտակել գյուղատնտեսական բույսերի վնասատուների և հիվանդությունների դեմ հաջողությամբ պայքարելու համար։ Կասկած չի կարող լինել այն բանում, որ եթե կոլորադյան բզեզը թափանցի մեր դաշտերը, նա կոչնչացվի անհապաղ։*

*Ա. ՄԱՐԿԻՆ*

ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրության գյուղատնտեսական բույսերի կարանտինի բաժնի պետի տեղակալ

(«Блокнот агитатора» № 22 1950 г.)

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

---

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ԾԱՎԱԼԵԼ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՊԼԱՆՆԵՐԸ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ՝ ՄԻՆՉԵՎ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 33-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՕՐԸ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*1. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի օրը արտադրական նոր հաջողություններով դիմավորելը սովետական ժողովրդի տրադիցիան է դարձել։*

*2. 1950 թվականի արտադրական պլանների ժամկետից շուտ կատարումը արդյունաբերության մեջ աշխատողների պատվի գործն է։*

*3. Արտադրական տեմպերի անընդհատ բարձրացումը, բարձրորակ արտադրանքի թողարկումը, խնայողության խստագույն ռեժիմը — նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության պարտավորությունների կատարման հիմնական պայմանն է։*

4. Արդյունաբերության բոլոր բանվորների ակտիվ մասնակցությունը սոցիալիստական մրցության մեջ, առաջավոր բանվորների, արտադրության նորարարների աշխատանքի մեթոդների լայնորեն տարածումը՝ արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու նախապայմանն է։

5. Ինչպիսի՞ սոցիալիստական պարտավորություններ է վերցրել իր վրա մեր բրիգադան, ցեխը, ձեռնարկությունը՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 33-րդ տարեդարձի առթիվ։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 32-րդ տարեդարձը։

Աշխատանքի բարձր արտադրողականության համար։ *«Ս. Հ.»-ի 1950 թ. հուլիսի 11-ի առաջնորդողը։*

Արտադրանքի ինքնարժեքը։ *«Ս. Հ.»-ի 1950 թվի հուլիսի 13-ի առաջնորդողը։*

Արտադրական բարձր ցուցանիշներով փակենք տնտեսական տարին։ *«Ս. Հ.»-ի 1950 թվի հուլիսի 27-ի առաջնորդողը։*

Սոցիալիստական էկոնոմիկան աճում և առաջադիմում է։ *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1950 թ. հուլիսի 29-ի համարում։*



# II

# ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ, ՄՏ ԿԱՅԱՆՆԵՐԻ ԵՎ ՍՈՎԽՈԶՆԵՐԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ԳԼԽԱՎՈՐ ԽՆԴԻՐՆ Է ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ՈՐԱԿՈՎ ԱՆՑԿԱՑՆԵԼ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ

1. ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի «1950 թվականի բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումների անցկացնելու մասին» որոշումը բարձր բերքի համար մղվող պայքարի մարտական ծրագիրն է։

2. Բերքահավաքը սեղմ ժամկետներում ավարտելը և պետական պարտավորությունները ժամկետին կատարելը կոլտնտեսությունների, ՄՏ կայանների և սովխոզների կարևորագույն խնդիրն է։

3. Աշխատանքի ընդունակ բոլոր բնակիչների մասնակցությունը բերքահավաքի աշխատանքներին, աշխատանքի ճիշտ կազմակերպումը, գյուղատնտեսության առաջավորների փորձի լայն տարածումը, մեքենաները բարձր արտադրողականությամբ օգտագործելը՝ բերքահավաքի հաջող անցկացման հիմնական պայմանն է։

4. Բոլոր կոլտնտեսությունների, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողների հայրենասիրական պարտքն է՝ լայնորեն տարածել սոցիալիստական մրցությունը բերքահավաքի ժամանակ, անկորուստ և որակով անց-

*կացնել բերքահավաքը, ժամանակին կատարել պետական պարտավորությունները։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը՝ «1950 թվականի բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումները անցկացնելու մասին». *«Ս. Հ.»-ի 1950 թ. հունիսի 16 և 17-ի համարները։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը՝ Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության առաջավորներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու մասին։ *«Ս. Հ.» 1950 թ. հունիսի 16։*

Բոլշևիկորեն անցկացնել բերքահավաքը և հացամթերումները։ *«Ս. Հ.»-ի 1950 թ. հուլիսի 6-ի առաջնորդողը։*

Առատ բերքը հավաքենք անկորուստ։ *«Ս. Հ.»-ի 1950 թ. հուլիսի 14-ի առաջնորդողը։*

Տեխնիկական կուլտուրաների բարձր բերքի համար։ *«Ս. Հ.»- 1950 թ. հուլիսի 20-ի առաջնորդողը։*

III

## ԿԱՌՈՒՑԵԼ ԱՐԱԳ ԵՎ ԷԺԱՆ — ՇԻՆԱՐԱՐՆԵՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ԽՆԴԻՐՆ Է

*1. Սովետական շինարարների հաջողությունները հետպատերազմյան ստալինյան հնգամյակում։*

*2. Պայքարը կապիտալ շինարարությունների տեմ-*



*պի արագացման, նյութերի խնայողաբար օգտագործման համար, կորուստների, շռայլումների դեմ, շինարարական աշխատանքի ինքնարժեքի իջեցման համար — ռեսպուբլիկայի շինարարների անհետաձգելի խնդիրն է։*

*3. Մեխանիզմների, սարքավորումների ռացիոնալ օգտագործումը, ստախանովականների, նորարարների արժեքավոր փորձի տարածումը — աշխատանքի արտադրողականության բարձրացման անհրաժեշտ պայմանն է։*

*4. Լայնորեն տարածել մասսայական սոցիալիստական մրցությունը օրինակելի շինարարական տեղամասերի կազմակերպման համար, աշխատանքի տեմպերի արագացման համար, գերազանց որակի և շինարարական աշխատանքների ինքնարժեքի իջեցման համար։*

*5. 1950 թվականի շինարարությունների ծրագրերի ժամկետից շուտ կատարումը հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանը կատարելու և գերակատարելու հիմնական պայմանն է։*

*6. Շինարարական նյութերի, գործիքների խնայողաբար օգտագործումը՝ նորակառույցները ժամանակին ավարտելու կարևորագույն պայմանն է։*

*7. Ինչպես է ընթանում մեր շինարարության տեղամասերում, բրիգադաներում մրցությունը աշխատանքի տեմպերի արագացման համար, լավ որակի,*

*շինարարական աշխատանքի արժեքի իջեցման համար։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Օրենք ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին։ 2-րդ բաժին։ *Հայպետհրատ, 1946 թ.։*

Օրենք Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին. 2-րդ բաժին։ *Հայպետհրատ, 1946 թ.։*

ՍՍՌՄ Ֆինանսների մինիստր ընկ. Ա. Գ. Զվերևի զեկուցումը՝ ՍՍՌՄ 1950 թ. պետական բյուջեի և 1948—1949 թվականների պետական բյուջեի կատարման վերաբերյալ։ *«Ս. Հ.»-ի հունիսի 14 և 15-ի համարները։*

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1950 թվականի երկրորդ եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին։ ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը։ *«Ս. Հ.» 1950 թ., հուլիսի 29։*

---

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— *Կոոպերացիայի մասին։ 1950 թ., տիրաժ 6.000, 13 էջ։*

Վ. Վ. ԿՈՎԻԺԵՆԿՈ. Կորեա։ *1950 թ., տիրաժ 5.000, 42 էջ, գինը 65 կոպ.։*

ՇԻՐՎԱՆԶԱԴԵ. Երկերի լիակատար ժողովածու։ *1-ին հատոր, 1950 թ., տիրաժ 10.000, 582 էջ, գինը 14 ռ. 65 կոպ.։*

ԿՈՆՍՏԱՆԴԻՆ ՍԻՄՈՆՈՎ.— Բարեկամներ և թշնամիներ։ *1950 թ., տիրաժ 4.000, 57 էջ, գինը 2 ռ. 60 կոպ.։*

ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՈՆՉԱՐ.— Դրոշակակիրներ։ *1950 թ., տիրաժ 5.000, 585 էջ, գինը 13 ռ. 40 կոպ.։*

Հ. ՔՈՉԱՐ.— Բարեկամություն։ *1950 թ., տիրաժ 5.000, 503 էջ, գինը 11 ռ. 45 կոպ.։*

Գ. ԽԱԼԱԹՅԱՆ.— Թրենու տերևի բերքատվության բարձրացման ուղիները։ *1950 թ., տիրաժ 3.000, 29 էջ, գինը 45 կոպ.։*

---

Պատասխանատու խմբագրի տեղակալ՝
Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ

